# ԱԶԳԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## ԱԶՆՈՒԱԿԱՆ ԶԱՐՄԻՆ

## ՏԻՒԶԵԱՆՑ

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ



Ը.

## ԱԶԳԱԲԱՆՈՒԹԻՒՆ

ԱԶՆՈՒԱԿԱՆ ԶԱՐՄԻՆ

## ՏԻՒԶԵԱՆՑ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1890.

# ԱԶԳԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## ԱԶՆՈՒԱԿԱՆ ԶԱՐՄԻՆ

# ՏԻՒԶԵԱՆՑ

ԳՐԵՑ

Հ. ԳԱԲՐԻԷԼ ՄԷՆԷՎԻՇԵԱՆ

ԿՐՕՆ. ՄԽԻԹ.



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1890.



**ԱԶԳԱԲԱՆՈՒԹԻՒՆ**

ԱԶՆՈՒԱԿԱՆ ԶԱՐՄԻՆ

# ՏԻՒԶԵԱՆՑ



*ՅԱՅՏՆԻ ճշմարտութիւն մըն է. թէ ազգի մը նկարագիրը պատկերացնող՝ ոչ թէ միայն իր ներկայ սերունդն. այլ մանաւանդ իր նախահարց վրայ: Վիպական է որուն նկարագրին պատկերն առ աչօք չունիմք. բայց կայ կ'ըլլայ նախ այն քննութեան՝ որ միայն ներկայ անձանց վրայ կ'ամփոփուի. եւ անտես կ'ըլլայ նախորդը: Նախորդը քնն-*

լով չէինք համկընար պարզապէս՝ ինչպէս սովորութիւն է, հնագոյն վեհագոյնքն, որոնք յօգուտ եւ ի զարգացումն իրենց ազգին անխոնջ հանդիսացած են, այլ հարկաւ կը պարտաւորինք յիշել նաեւ նորագոյն ժամանակի ազգասէրներն, որոնց վրայ իրենց ազգին նախնեաց սեպհական ոգին կը փայլի:

Օսմանեան մեծազօր Պետութեան հպատակ ազգայնոց ազգաբանութիւնն ընելու նպատակներս է՝ մեր ազգին ազնուական ընտանեաց անուններն անկորուստ պահել յետագայ դարերուն: Քանի քանի երեւելի ընտանեաց եւ ոչ անունն կը յիշուի այժմ, վասն զի զանոնք ի գիր անցընելու՝ ժամանակակից պատմագիրք՝ կամ գոնէ հրապարակագիրք անփոյթ եղած են: Բայց մեր միտքն է նաեւ զօրաւոր ապացոյց մը տալ՝ թէ այս հզօր պետութեան հայ պաշտօնեայք, լիովին ճանչնալով իրենց վրայ դրուած բեռան ծանրութիւնն՝ ըստ կարի ջանացած են ի գոհութիւն պետութեան վարել իրենց պաշտօնն. եւ իրենց սեպհական սրամիտ հանճարովն եւ գործօն աշխուժիւն մեծապէս նպաստած են՝ այնեւայլ մեծ պաշտօններու փառաւոր զարգացման:

Հարկ չենք տեսներ հոս կանխելու ըսելու՝ թէ այս ամէն յատկութիւնք՝ վերջին աստիճանի կատարելութեամբ կը

փայլին Տիւզեան ազգատոհմին պատմութեան գոգցես մէն մի էջերուն վրայ. որ եւ պատճառ եղած են այս բազմաճիւղ հին զարմին շքեղ փառաւորութիւն եւ պերճ անուն մը ժառանգելու. անուն մը՝ որուն պայծառութիւնն դարերու շրջաններ ի զուր պիտի ջանան մթագնել, եւ ժամանակի ժանգահարիչ ակռաներն պիտի չկարենան կրծել զայն:

Օսմանեան Պետութեան մէջ շատ քիչ ազգատոհմ՝ կրնայ համրուիլ, որ իր ժամանակին ճախող բախտին դժան երեսն տեսնելու ստիպուելով հանդերձ, կրցած ըլլայ օսմանեան քաղաքակրթութեան պատմութեան մէջ իր առաջին փառաւոր դիրքը քանի մը դար անխախտ պահել: Այս պանծալի բացառութիւնը կը տեսնենք Տիւզեան ազնուական գերդաստանին վրայ:

# Ա.



ՏԻՒԶԵԱՆ հռչակաւոր գերդաստանին հիմնադրին՝ ինչպէս նաև ի Կոստանդնուպոլիս հաստատուելուն մանրամասնութիւնքն, տակաւին մթութեան թանձր քօղով ծածկուած կը մնան. որովհետև ծանօթ չէ թէ ով էր այն անձն և ինչ իր արդիւնքն, որ արժանացած ըլլայ Օսմանեան պետութեան ծառայութեան մէջ մտնելու փայլկենէն սկսեալ. իր գերդաստանին ապագայ փառաւորութեան՝ այսպէս ըսենք, ջահակիրն ըլլալ: Պատմութիւնք կը ծածկէ մեզմէ այս կարևոր պարագաները: Բայց կայ՝ փոխանակ պատմութեան ստոյգ տեղեկութեանց, աւանդութեան յենարանն, որուն՝ առ ի չգոյէ լաւագոյն աղբեր, կը հարկադրինք հետևիլ:

Այս աւանդութեան համեմատ՝ Տիւզեան մծահաչակ տան ծննդավայրն՝ փոքր Ասիոյ Սեբաստիա (Սըվազ) քաղաքին արեւելեան կողմը Տիւրիկէ քաղաքը կը գտնենք: Կ'ըսուի թէ Յարութիւն անուն կաթողիկեայ Հայազգին 1600ին պանդխտութեան գաւազանն ձեռք առած, գաղթած ըլլայ անկէ Տաճկաստանի մայրաքաղաքը: Բայց թէ ինչ պատճառաւ, եւ թէ որ դասակարգին կը վերաբերէր այս Յարութին, ահա հարցումներ, որոնց գոհացուցիչ պատասխան չի կրնար տրուիլ: Վերյիշեալ պանդուխտն իր ճարտար արուեստին (անշուշտ՝ ոսկերչութեան) դրութեամբը, կայսերական պալատան հետ յարաբերութեան կը մտնէ եւ [illegible] [illegible] կ'անուանուի: Այսչափ միայն գիտենք, թէ կարի յաջողաձեռն գտնուելով յիշուած արուեստին՝ արքունի պալատին մէջ մեծ անուն կը հանէ: Իր անուամբ ոսկերչի խանութ մը կը բանայ, որ կայսերական գանձատան քով՝ մինչեւ ԺԹ. դարու սկիզբները Տիւզեան անուամբ կանգուն էր մնացած. իսկ բնակութեան տեղն էր Վլանկայ Եէնի-գաբու մասերը: Բայց ինչպէս քանի մը պարագաներէն կ'երեւայ՝ մանաւանդ եթէ մտադնենք Տիւզեան գերդաստանին սեպհական հանգստարանի տապանագիրներուն վկայութեան՝ ութեւտասներորդ դարէն սկսեալ բուն բնակութեան տեղը՝ Գուրուչէշմէի գիւղաւանն պէտք է ենթադրել. վասն զի 1721էն սկսեալ այս ընտանեաց վախճանեալ անդամներն հոն ի հանգիստ կը տարուէին:

Որչափ պատմութիւնն ժամանակաւ դէպ ի մեզ կը յառաջանայ, նոյնչափ լուսաւորագոյն ծանօթութիւններ կը շատնան. եւ մեր աւանդութիւն կամ կարծիք բարձն՝ ստոյգ տեղեկութեանց կը փոխուի. վասն զի Յարութիւնի մահուանէն ետքը՝ նոյն [illegible] կը ժառանգէ իր որդին Մահտեսի Սերգիս՝ որ Նոր գլուխ կը բանայ Տիւզեանց գերդաստանին պատմութեան մէջ:

# Բ.



ՄԱՀՏԵՍԻ ՍԷՐԳԻՍ՝ որ իր հօրը կենդանութեան ատեն կը յաճախէր կայսերական պալատն եւ քաջափարժ էր անոր արուեստին մէջ. Հայութինի մահուան օրն իսկ՝ առանձինն արքունի հրովարտակաւ Ա[illegible] կը կարգուի։ Իր արուեստին յաջողակութեան հետ՝ ըստ պատմութեան, ունէր մարմնոյ եւս գեղեցիկ յատկութիւններ, բարձր հասակ եւ կաշրմ-բուռն կազմուածք մը, որ պատճառ եղած է, ինչպէս կը կարծուի, այս գերդաստանին՝ Տիւզ անուանակոչութեան։ Վասն զի կը պատմուի թէ օր մը Սուլթան Ահմէտ Գ. զինքն արքունի պարտիզին մէջ նշմարելով՝ անոր գեղեցկակազմ, յաղթանդամ եւ բարձրասուն մարմնոյն երկայ-

նութեանը վրայ սքանչացած՝ «Տիւզը (թրք. ուղ-ղորդն) ինծի կանչեցէք» հրամանը տուած ըլլայ (՞)։ Սակայն եթէ այս զրոյցը բաւական ստուգութիւն չունի, անծանօթ կը մնայ այս գերդաստանին անուանակոչութեան բուն պատճառը։

Սերգիս իր ամուսնէն՝ որ էր Նուրի խաթուն (✝ 1738), երկու զաւակ ունեցաւ Յովհաննէս եւ Տէվլէթ[1]։ 1721ին Մահտեսի Սերգիս յաստեաց փոխեցաւ եւ Գուրուչէշմէի հանգըստարանը գրուեցաւ։

[1] Այս վերջինս հայր էր Գարոն Սերգսի՝ որ Խիւստավէրեանց կամ Սոմալեանց փեսայացաւ յերկրորդ ամուսնութեան։ Իսկ Տէվլէթի երկրորդ որդին էր Յովհաննէս։



# Գ.



Երրորդ ներկայացուցիչն Տիւզեան ազգատոհմին է՝ Մահտեսի Սերգսի անդրանիկն՝ Յովհաննէս աղա. որուն ծննդեան տարին առաջնոց պէս անստոյգ կը մնայ: Իր հօրը կենդանութեան ատեն նոյնպէս ոսկերչութեան արուեստին հետամուտ ըլլալով՝ հօրն աջ բազուկը կ'ըլլայ. եւ իր եռանդուն աշխուժիր Սուլթան Մահմուտ վեհապետին աչքը կը մտնէ: Սուլթանն այնպէս յաչս կ'առնու զՅովհաննէս՝ որ 1730ին յաքքունուս ռոճիկ կը կապէ անոր: Իր հաւատարիմ ծառայութեան ժամանակը գրեթէ ամէն օր վեհապետէն նորանոր սիրոյ ցոյցեր կ'ընդունէր:

Շատերուն զարմանալի պիտի երեւայ անշուշտ, եթէ ըսենք՝ թէ այս Յովհաննէսէն սկսեալ Տիւզեան զարմին մէջ ուրիշ տարր մը խառնուեցաւ. որովհետեւ ամուսնանալու ատեն՝ մինչդեռ իր անուան եւ պաշտօնին բարձրութեամբ կրնար երեւելի ազգատոհմէ մ'իրեն լծակից ըն-

տրել, իր սրտին ազնուութեամբը թշուառ մ'ու-
րախացընել ուզելով՝ կնութեան առաւ զՇուխխի-
մէ (✝ 1738) զդուստր Հանցի. (Hans Յովհաննէս)
որ գերի ինկած եւ յետոյ որդեգրեալ էր Խա-
շուկ անուն մէկէ մը: Կը Համարուի՝ թէ Հանց
Աւստրիացի էր, բայց ի Հունգարիա ծնած Հայ-
ազգի: Այս ամուսնութենէն չորս զաւակ ունե-
ցաւ. անդրանիկն՝ Միքայէլ, որ Հօր Միքայէլ
պատուանունն կը կրէր, երկրորդն՝ Կարապետ,
Հայր պարոն Անդրէի եւ Թերեզայ Տիգեանց.
երրորդն՝ Յակոբ, որ կարճակեաց կը վախճանի,
եւ չորրորդն՝ Երանուհի:

Յովհաննէս՝ որ ուսումնասէր եւ կրօնասէր էր, իր կենդանութեան ժամանակ ազգատոհմին պայծառութեան օգուտ չափ աշխատելէն ետեւ՝ 1744ին Մարտի 6ին կը փակէ իր աչուըներն յաւիտենականութեան մէջ բանալու համար: Իր զգուշաւոր շրջահայեցութեամբն ի գերեւ հանեց իրեն դէմ արձակուած՝ չար նախանձու սլացեալ նետերն:





ՄԻՔԱՅԷԼ ՉԷԼԷՊԻ ՏԻՒԶ

*ծն. 1724 Յնր. 14: — † 1783 Օգոստ. 13:*

## Գ.



ՈՐՉԱՓ կը յառաջանանք, նոյնչափ մեր աչքի կ՚ել-լեն Տիւզեան գերդաստանին փառաւորագոյն զարդերն: Առաջինն է Յովհաննու որդին *Միքայէլ Չէլէպի*. Հօ-ծու [illegible] անուանեալ (ծն. 1724 Յունուար 14) ամուսնացեալ ընդ խաթունի փիրուզի դստեր Սր-մբէշ Պաղտասարայ (յամի 1744, փետր. 16):

Ի լոյս մեծամեծ ձիրք զարդարուած՝ մանկութենէն անցոց նկարչութեամբ, ոսկերչութեամբ ու քիմիագիտութեամբ ու ամէնց պատուելով. իր նկարչութիւնն շատ համբաւաւոր էր: Սուլթան Մահմուտ զինքն [illegible] անուանած առեն՝ կը զարմանար ձեռակերտա-

թեան մէջ անոր յաջողակութիւնը տեսնելով:
Անկեղծութեանն համար շատ գերադանցեց իր նախորդներուն: Եւ այնպէս մտերիմ էր թագաւորին՝ որ ամենածածուկ գաղտնեաց ալ կցորդրած էր թագաւորը զինք՝ հաւատարմութեանը համար: 1754ին Սուլթանին մահուանէն ետեւ՝ Սուլթան Օսման Գ.ի ատեն՝ թէպէտ սեւ ամպեր իր աստեղ նսեմանալու գուշակ կ'ըլլային, սակայն իր ճարտարութեամբը շուտով փարատեցան այն նշանները: Երբ 1757ին Սուլթան Մուսթաֆա Գ. կը թագաւորէ՝ Միքայէլի առջեւ գործունէութեան նոր ասպարէզներ կը բացուին:

Որչափ Սուլթանին պաշտպան ձեռքը հովանի էր Միքայէլի վրայ, նոյնչափ ալ Պալթի անուն չարակամ Հրէին քսութիւններն ժամանակ մը կը տատանային, որոնց հետեւանքն ի սկզբան անդ ծանրացան Միքայէլի վրայ, բայց, ինչպէս ըսինք, շատ կարճ ժամանակի համար: Հրեայն իր քսութիւններն այնչափ կը սաստկացընէր, որ Միքայէլ ստիպուեցաւ առ ժամանակ մի աքսորնեաց հրամեշտ տալ, Կալաթա փոխադրուիլ եւ այդ Ս.-Ք.-- Ե.-Ն.ին մէջ իր առեւտուր շարունակել: Բայց կրցաւ Հրեայն իր երազած յաջողակութեան պտուղներն վայելել ...: Սուլթան Մուսթաֆա քաջ տեղեակ ըլլալով Միքայէլի թշնամեացը նախանձու՝ իր գանձին ականակապ միագլուխ կամար մը հանել կու տայ, եւ կը հրամայէ Հրէին՝ որ երկգլխեան ընէ զայն՝ յար եւ նման առաջին գլխուն: Հրեայն կը ճգնի, կը տառապի, կը յուսահատի. յերեւան կ'ելլէ

իր անփորձ արուեստը: Սուլթանը կամարին երկրորդ գլուխը տեսնելով՝ այնպէս կը նեղուէր, որ զՀրեայն ի սպառ կը մերժէ եւ «Միքայէլը կանչեցէք», կ՚ըսէ: Միքայէլ կը փութայ եւ իրեն յանձնուած գործն այնպիսի կատարելութեամբ եւ ճիշդ նմանութեամբ կը յօրինէ, որ թագաւորն կամարը ձեռքն՝ չի կրնար երկու գլուխներէն հինն ու նորը զանազանել: «Գիտէի, կ՚ըսէ, Միքայէլիս ձեռքը» — եւ խեղճն յաջողութեան ժամը կը հնչէ. Միքայէլ իր առաջին պաշտօնին մէջ կը հաստատուի: Բայց այս բաւական չէ՝ կը սկսի պաշտօնէ պաշտօն բարձրանալ: Տէրութեան փողերանոցն որ մինչեւ նոյն առեն Հրէից ձեռքն էր, անոնց անհաւատարմութեանն համար կ՚առնուի եւ Միքայէլի կը յանձնուի: Միքայէլ գիտնալով որ արհամարհեալ Հրէին սիրտ գրեթէ անպարտելի է, չ՚ուզեր այս պաշտօնն յանձն առնուլ: Բայց ինչ ընելու էր. Սուլթանին անդարձ հրամանը կը ստիպէր...: Միքայէլ կը վճռէ եւ հոգւով ու մտօք այս նոր պաշտօնակալութեան կը սկսի: Բայց իր գուշակութիւնները կը կատարուին, եւ մերժեալ Հրէից իր բրած այնչափ բարեացը փոխարէն՝ կը ժառանգէ քինախնդիր ոխակալութեան դառն պտուղները: Միքայէլի հաւատարիմ՝ սիրտ չի կրնար ոխերիմներու գրպարտութեանցն համբերել, եւ սրտի կսկիծէն ու վշտէն խելքը կը կորուսանէ: Սակայն վշտաց մէջ բարեացակամ՝ մարդկան բարեկամները չեն պակսիր: Նազըմ Պէյ՝ որ հզօր ազդեցութիւն մ՚ունէր, իրաւութիւնն եւ Միքայէլի

վիշտը կը տարածէ յոյս ալքային, եւ Միքայէլ իր թշնամեաց վրայ կը յաղթանակէ[1]: Բայց վերջին չէր այս քսութիւնն: Գուրուչէշմէի տան շինութեան ժամանակն ալ միեւնոյն ամբաստանութիւններն կրկնուեցան. սակայն խոհեմ Սուլթանն՝ Միքայէլի թշնամիներն ի սպառ ափիբերան կարկելու նպատակաւ, իր քոյրը՝ Էսմա Սուլթանը ծպտեալ կը դրկէ՝ անձամբ տեղեկագիր մը բերելու: Յայտնի էր թէ ինչ պիտի ըլլար հետեւութիւնն:

Բայց քիչ ետքը Միքայէլ՝ իր միակ ապաւէնն՝ զՍուլթան Մուսթաֆա կորսնցուց, որով փոխերանոցի գործակալութեան մէջ իրեն ընկեր տրուեցաւ Յոյն մը եւ Հայազգի մը. սակայն Միքայէլ զատուք յանձն չառնելով՝ դարձեալ նոյն պաշտօնին մէջ առանձին կը մնայ:

Իր բարձր դիրքի մէջ ալ ջերմ եւ մարդասէր սիրտ մը կը տածէր Միքայէլ, եւ այն՝ ոչ միայն իր հալածեալ կրօնակցացը[2], այլ նաեւ ամենուն՝ որոնց կրնար օգնութիւն մ'ընել, որով 1769ին պատերազմէն ետքը զՅոյնս սպառսպուռ ջնջմանէ կ'ազատէ իր խնամոտն եւ մեծանձն միջամտութեամբը: Այսպիսի փառաց

[1] Իր հաւատարմութեան բազմաթիւ օրինակներէն մին է հետեւեալը. Արքունի գանձատան աւելորդ իրերն աճուրդի հանուած պահուն՝ պղնձի գնով կը գնէ հին ժանգոտեալ սուր մը, զոր մաքրելով ոսկի ըլլալը տեսնելուն պէս՝ կը փութայ զայն արքունի գանձատունը դարձնել, ըսելով՝ թէ «պղինձ կարծելով գնեցի, ոսկի ելաւ»: Այս առթիւ Միքայէլի վրայ՝ Սուլթանին տածած համարումը կրնայ դիւրաւ գուշակուիլ:

[2] Իր մէկ խօսքին ազդեցութեամբը 1761ի հալածանքէն 53 հոգի ազատելը՝ պատմական է:

մէջ նեցուկ մը կորսնցնելու չարաղէտ դէպքն կրնայ մտածուիլ, թէ ինչպէ՛ս ցաւ կրնար ազդել թէ իր մերձաւորաց եւ թէ բոլոր ծանօթից եւ սակայն այն տրտմախառն ժամը կը մօտենար: Յանկարծ օր մը կաթուածահար անկողին կ՚իյնայ Միքայէլ, եւ ամենաքաջ բժշկաց ճարտար ձեռքն ալ չի կրնար զինքը մահուան ճիրաններէն ճողոպրել: Միքայէլ գրեթէ 60 տարեկան կնքեց իր արդիւնալից կեանքը 1783, Օգոստոս 13ին: Իրեն յաջորդ թողուց զաւակաց խումբ մը, որք էին Յովհաննէս, Անտոն, Վասփաս, Վարդուհի, Գորոթէա, Մարիամ. (Թող իր երեք զաւակներն ալ, որ իրմէ յառաջ վախճանած էին,) բաց ասկէ՝ տեսաւ իր վեց թոռները: Ուստի եւ իր մահուան ժամուն՝ Տիգրանց գործը պիտի ըլլար վերջ: Սուլթանին՝ Միքայէլի զաւակներէն մին յաջորդ առաջարկել, եւ զտան զՅովհաննէս՝ Միքայէլի անդրանիկն, որ մեր պատմութեան դիւցազներէն պիտի ըլլայ:





ՅՈՎՀԱՆՆԷՍ ՉԷԼԷՊԻ ՏԻՒԶ

ծն. 1749 Ապր. 24: — † 1812 Ապր. 9:

## Ե.



ՀՕՐՆ աշակերտակից եւ ի մանկութենէ թագաւորին սիրելիներէն մին էր Յովհաննէս Չէլէպի Տիւզեան (ծն. 1749), որ բաւական եղաւ Սուլթան Սէլիմի ժամանակ իւր հօրն յիշատակը կենդանացընելու։ Պատմութեանս ընթացքին մէջ տեսնուեցաւ որ Տիւզեան ընտանեաց թշնամիք անպակաս էին. նոյն երեւոյթն հոս ալ կը կրկնուի, վասն զի այնպիսի փառաւոր պաշտօնի մը փայլը շատերուն աչքը խտղտելով շլացուց, եւ ամէն հնարաւոր ջանք ի գործ դնել տուաւ, գոնէ այս անգամ զայն իրենց ձգելու։ Սակայն դարձեալ ամէն հնարագիտութիւն եւ յաջողակութիւն ի դերեւ ելաւ. վասն զի Սուլթանը գտած էր Յովհաննու վրայ սուր խելք, շրջահայեաց գործունէութիւն, հաւատարիմ ձըգա-

պահութիւն․ երեք յատկութիւնք՝ որ անհրաժեշտ կարեւոր են այսպիսի պաշտօններու համար։ Այս իր երեք յատկութեանցը շնորհիւ՝ Յովհաննէս Չէլէպին մեծապէս սիրելի եղաւ բոլոր արքունական տան․ ի մասնաւորի թագաւորին հայրագութ խնամածութեամբ մը կը հոգար զինքը եւ անոր մեծ որդին գԳրիգոր, որ հազիւ երիտասարդութեան արբունքն հասած՝ թեւ ու թիկունք էր հօրը։ Սուլթանն իր մեծ հաճութիւնն կը յայտնէր մանաւանդ երբ Յովհաննու եղբայրն՝ որ քաջ քնարահար էր, եւ Յովհաննու որդիքը՝ Սերգիս եւ Միքայէլ՝ ճարտար փանդռնահարք, իրենց մատանց արագ շարժմամբը զարքայն կը զուարթացընէին։

Յովհաննու ճարտարութիւնն այնպէս անուանի էր, որ նոյն իսկ Սուլթան Սէլիմ՝ որ քաջ արուեստագէտ էր, մանաւանդ գրականութեան մէջ, շատ անգամ՝ իր զարմանքն յայտնած է Յովհաննու ձեռագիտութիւնը տեսնելով։

Այս ճարտարութեան հետ Յովհաննէս ուրիշ յատկութիւն մ'ունէր, որ էր խղճի մօք փոյթ տանիլ իր զաւակաց բարւոք դաստիարակութեան, եւ ինքն անոնց առջեւ գիտութեան լուսաւոր փարոս մին էր։ Աշխարհի գիտութեան փափագող ցուցուց զինքն՝ երբ բազմակողմանի ուսմանց եւ երաժշտութեան մէջ ինքն արդէն կրթուած՝ փոյթ տարաւ նաեւ իր ազգային յառաջդիմութեան։ Ի Կալաթա եւ ի Գարթալ երկու դպրոց հաստատեց՝ գրեթէ միայն իր անձնական դրամոց նպաստիւքը։ Մեծ փոյթ տա-

րաւ արդէն գոյութիւն ունեցող դպրոցաց բա-րեզարդ կարգաւորութեան, և սկսաւ դպրոցն վերստին նորոգեց: Նոյնպէս շատ փոյթ կը տա-նէր ազգին մէջ օգտակար և ուսումնական գրքեր տարածելու[1]. քանի՛ քանի մատեաններ իր դրամովն սկսան հրապարակ ելլել. բաց ատկէ՝ ազգին յառաջդիմութիւնն դիւրացնելու նպա-տակաւ՝ Արշարունեաց ընկերութիւնն հաստա-տեց, որուն ծախիւքն ամսաթերթ մըն ալ հրա-տարակել կու տար, այն է Դիտակ Բիւզանդեան[2]:

Այնայ դիւրաւ երևակայելի, որ այսպիսի կրօնասէր, ուսումնասէր և ազգասէր հօր մը շառաւիղներն՝ իրենց հօր հետ մեծցէին այս երեք յատկութեանց մէջ: Ասոնց մէջ անուանի էր ու-

---

[1] «Իր ուսումնասիրութեան եռանդը ցուցնելու համար յառաջ կը բերենք մեծաւ ընկերութեան առջև իր խօսած ճառէն մաս մը»... «Ջանանք մենք միաբանեալ այսուհետև զմեզ փոխել, որ մեր օրինակովը ազգնուս կա-րողանանք փոխելու. մենք նախ ըլլանք ազգասէր որ ազգնուս ըլլայ ազգասէր... Ու նախ և առաջ մենք ալ (թէպէտև ատեններս անցած է) ամա կարելութեան չափ սորվինք. հէչ որ չէ՝ ուսում ու ուսումնականաց սիրող ըլլանք. ու ասոր պակաս մնացածը՝ մեր զաւկներուն ուսում սորվցնել տալով՝ լեցընենք. մեր զաւկներուն վրայ ասոնկ խարճելը պէշ պարապ բան չսեպենք. մեր աւելորդ գէֆ ու ֆայտէն, հաշուել կարզիլէն ասոնց փար-չենները՝ որ օրն ի բուն կեանքերնիս զաւկներնուս վրայ կը մաշէն, խօշնուու ընենք. ատասպար հոգանք... Ու աս մեր ընկերութեան անունն ալ դրեր ենք Արշարունեաց ընկե-րութիւն... Առջի միտքը մեր ընկերութեան է՝ մեր խար-ճովը մեր տաղկովը տպագրել տալ ան ամէն գրեանքը մեր երախտաւոր նախնեաց՝ որ մինչև հիմայ մնացած են...։ Երկրորդ միտքը աս ընկերութեանս է, որ ինչվան հիմայ եղած ուսումնական գրքերու և այլ նորանոր գիրքեր... տպագրել տանք։... Հիմկու հիմայ ասոր սկսուածք ըրե-ցինք ընել տալ աս Դիտակովս...։ Յ. Տ., Դիտակ Բիւ-զանդեան, 1813, Թ. 1.

[2] Տես Պատմութիւն հայ լրագրութեան, Հանդէս Ամսօրեայ, 1887 էջ 90, 118։

ստմպուլ Թագուհի դուստրը, որ պայծառ զարդ եղաւ Տիգրեան տան իր ուսումնականութեամբը, եւ մանաւանդ հայերէն լեզուի մէջ բռած յառաջադիմութեամբը. Նոյնպէս Իսկուհի դուստր Յովհաննու, արժանացաւ՝ իր հայերէնի ուսուցչէն, որ էր Հ. Արսէն Վ. Բագրատունի՝ «Հայկաբան» պատուաբեր տիտղոսին:

1807ի քաղաքական անհաստատ դիրքը՝ ծանրապէս կը սպառնար Յովհաննու եւ բոլոր Տիգրեան տան. սակայն ի ժամանակին բարերարութիւններով շահուած բարեկամաց, եւ մանաւանդ Սուլթան Սէլիմի պէս խնամատու թագաւորին խնամքն այս չարագուշակ ամպերն շուտով փարատեցան: Սակայն երկինք զուարթանալ, բայց կարճ ժամանակ. որովհետեւ Սուլթան Սէլիմի՝ ազնուափառ խնամածուին եւ հօր՝ տարաժամ մահը՝ զՅովհաննէս Չէլէպի սաստիկ տրտմեցուց եւ պատճառ եղաւ սրտի ջղդողութեան ծանր եւ երկարատեւ հիւանդութեան: Թէեւ Սուլթան Սէլիմի յաջորդն՝ Սուլթան Մահմուտ միեւնոյն հայրական խնամքը կը նայէր իր հաւատարիմ ծառային՝ Յովհաննու եւ բովանդակ Տիգրեան ընտանեաց, բայց Յովհաննու հիւանդութեան հետեւութիւնն անդարձ եւ անդարմանելի էր. մանաւանդ որ Չէլէպին բնական հասակ մ'ունէր: Արդարեւ 1812 Ապրիլ 9ին՝ 63 տարուան փակեց Յովհաննէս Չէլէպի այն քաղցր աչուըները՝ որ միայն քաջալերութիւն եւ խրախոյս կը ցուցէին: Սուլթան Մահմուտ իր ծառային սգալի մահուան ցաւակից եղաւ, եւ ի նշան իր մեծարանաց եւ

Համարման՝ անոր որդւոյն սկսաւ ցուցնել միե-նոյն խնամքը։ Քանի մը տարի ետքը, այսինքն՝ 1818 նոյ. 17ին, Յովհաննէս Չէլէպիոյ ամուսինն ալ Մարիամ՝ տիկին, դուստր Փուրճեան Պօղոս Աղայի, իր ամուսնոյն հետեւեցաւ ի գերեզման Պալըքչէշմէի։

Յովհաննէս 12 զաւակ թողուց, որոնց եր-կրորդն էր Գրիգոր Տիգեան։



ՍԵՐԳԻՍ ՉԷԼԷՊԻ ՏԻՒԶ

*ծն. 1777 Հոկտ. 15: — † 1819 Հոկտ. 2:*

## Զ.



Աւելի Տիւզեան գերդաստանին պատմութիւնը ցարդ մեր առջեւ դրաւ Օսմանեան պետութեան ծառայութեան մէջ անոր ունեցած միշտ փայլուն դիրքը, եւ ասոր հետ նաեւ այս հռչակաւոր ընտանեաց անհաշտ թշնամեացը բաջաղանքն ու քսութիւնները միշտ ի գերեւ ելած. բայց որո՞ն մտքէն կրնար անցնիլ, որ գրեթէ դար մ'ետքը այս ընտանեաց տարեգրոց մէջ ողբերգութիւն մըն ալ պիտի նշանակուի...: Թէպէտ այս ալ՝ որչափ ցաւ էր Տիւզեան ընտանեաց, նոյնչափ Տիւզեան անունն աւելի անմահացուց:

Յայտնի ցոյց են այս չափազէտ դէպքերն՝ թէ որ-չափ կրնայ երբեմն քսութիւնն ու զրպարտու-թիւնն ազդել, մանաւանդ՝ — բանիւք առ սէր ճշմարտութեան, — երբ խոհեմական զգուշու-թիւնք թեթեւակի իսկ զանց առնուի: Բայց չկամինք. եւ մեր պատմութեան թելը շարու-նակենք: —

Գրիգոր Տիգրեան (ծն. 1774) հօրը մա-հուանէն՝ իր երիցագոյն մանչ զաւակ, անոր պաշտօնին յաջորդ համարուեցաւ: Չի կրնար ու-րացուիլ իր ուշիմութիւնն եւ մանաւանդ գի-տութիւնն. սակայն փառասիրութեանց եւ պան-ծանաց չքնաղութեանց ալ չափազանց միտութիւն մ'ունէր, որով առաւել եւս կը գրգռէր իր պաշտօնին աչք նետողները: Իր հօր արքունի պալատան մէջ թողած անուան յիշատակին հա-մար՝ Տիգրեան ընտանիքն Օսմանեան պետու-թեան առջեւ ունեցած համարումն չկորսնցուց. բայց բուն պաշտօնն՝ որ էր արքունի ոսկերչա-պետութիւն, յանձնուեցաւ ոչ թէ Գրիգորի, ինչ-պէս ցարդ սովորութիւն էր, այլ Յովհաննու եր-կրորդ որդւոյն՝ Սերգիս Չէլէպիօյն (ծն. 1777 Հոկ. 15): Իսկ Գրիգոր մինչեւ նոյն օր՝ 1812ին արքունի հրամանաւ փոխադրեցին Կ—ք—Բ—ն տան: Երկու եղբարք, հինգ տարի վերջը միեւնոյն օրն, այսինքն 1817 Յունուար 27ին, անմահացան. Գրիգոր՝ Քամֆիւրլ Հեյպէթլէրեան որդւոյն հետ, իսկ Սերգիս՝ անուանի բժիշկ Պօ-ղոս Շաշեանի տանը՝ Սրբոց Հի որդւոյն հետ, որ նոյն տարին՝ 1817 նոյ. 1ին ծնաւ զԱրհրան պէյ:

Երկու եղբարք ձեռք ձեռքի տուած՝ իրենց պաշտօնն արժանապէս վարելու կրարու ջեռ կը մղէին: Նոյն ժամանակներն ի Նոր-գիւղ (Եէնի-քէօյ) ծովափնեայ ամարանոցն՝ պալատ մը կը շինէին երկուքը, եւ ծախուցմէկ մասն՝ իբր 30.000 դահեկան, որ նոյն ժամանակին համեմատ բաւական մեծ գումար էր. այս փախձանա պարգեւ տուին իրենց խնամագութ պաշտպան՝ Սուլթան Մահմուտ Բ.ին: Թշնամիք՝ որոնք միշտ անխոնջ նորանոր առիթներու կը սպասէին, այս շինութիւնն առիթ առնլով՝ իրենց քսու լեզուն սկսան թեքել ու սրել: Բայց ուստի թշնամեաց այս աստիճանի նախանձը:

Գլխաւոր պատճառն էր Տիւզեանց թագաւորին շատ սիրելի ըլլալը: Անոնք միշտ պալատ մուտ եւ ել ունէին, քանի մը տուրքերէ բոլորովին ազատ էին: Սարգիս քաջ մական (جريد) կը խաղար, եւ նետաձգութեան մէջ արտաքոյ կարգի յաջողաձեռն էր. այս խաղերն ալ թագաւորին շատ հաճելի ըլլալուն, արտօնութիւն շնորհած էր Սարգիսին՝ որ զինքն ատենցնել զուարճացնէ:

Սուլթանն՝ որ միշտ համոզեալ էր, թէ Տիւզեանց ազգասէրի քաջածանօթ հաւատարմութիւնն այս սպառնալեաց թշնամեաց չարութիւնն ի գերեւ ելած հանէ, որպէս զի նախանձորդներն ալ իր յայտնապէս խայտառակուին. Հրաման կու տայ որ քննութիւն ըլլայ եւ Խազահիմ Սարէմ Էֆէնտին քննիչ կը կարգէ: Տիւզեանց թշնամեաց պարագլուխներէն էր Շապճի Հրեայն, որ բնականապէս մամոնայական ընչա-

քաղցութիւնն յագեցնելու միակ ճամբայ՝ փո-
ղերանոցի բարձր պաշտօնը կարծելով, յոյն կը
ձգտէր. եւ այս վախճանաւ իր չարանիւթ գաղ-
տնածածուկ նենգութիւնը սահման ու չափ չէր
գիտեր: Բայց ինչ եղաւ քննութեան վախճանն.
Տիգրանք յաղթանակեցին եւ իրենց վեհապե-
տին կամքը սամոյրներ հագան, որ թագաւո-
րին հաճութիւնը վայելելու ամենամեծ նշաննե-
րէն էր:

Այսպէս անփոյթ անցաւ այս փոթորիկն,
որ հարկաւ ափիբերան լեցուցած պիտի ըլ-
լար Տիգրանց ուժաթափ, ընչասպառ թշնամիքը:
Բայց աւա՜ղ, չեղաւ այնպէս. Թշնամեաց ոխա-
կալ ատելութիւնը վերջին յուսահատական փորձ
մըն ալ ըրաւ, եւ — ցաւով կ՚ըսենք — այս ան-
գամ կրցան յաջողութիւն գտնել:

Տիգրանց դէմ գրգռող ամենամեծ
թշնամիներուն բուն պարագլուխն էր Հալէթ
էֆ.: Ի սկզբան անդ Տիգրանք նշմարեցին՝ որ
նոր դարան մը կը լարուի իրենց կենաց դէմ, բայց
քաջալերեալ նախընթաց փորձերուն շատ անգամ՝
ապարդիւն մնալէն՝ ապահով էին թէ այս անգամն
ալ պիտի կարենան իրենց դէմ եղած դաւադ-
րութիւններն ի դերեւ հանել: Բայց խոհեմական
զգուշութիւնը պէտք չէր ձեռքէ թող տալ.
մանաւանդ այսպիսի տագնապալից ժամանակի
մը մէջ: Ստոյգ է, այնպիսի բարձր պաշտօններու
մէջ այնչափ ատեն վայելող ընտանիք մը կրնար
իր վիճակին համեմատ փառաւորութիւններ
ցուցնել, բայց գոնէ նոյն միջոցին, որ իրենց դէմ

ընթրած որ ըլլային, չարամտութեամբ կ'արձա-
կուէին, գոնէ նոյն սուտն կ'ըսէին. հարկ էր ու-
նել աչալուրջ ըլլալ: Հակառակորդք դրան սրա-
գոյն կողմնակից մին ալ շահեցան յանձին Պէզ-
ճեան Գասպար Յարութիւն Ամիրայի:

Գրիգոր իբրեւ պատասխանատու վարիչ՝
փողերանոցի ոսկւոյն վրայ իր Առաքել եղբայրն
եւ քանի մ'ուրիշ անձինք դրած էր, որոնց հա-
ւատարմութեան կրնար վստահիլ: Առաքել հա-
շուեկշռոյն հաւատարմութեան այնչափ ծանրա-
կշռութիւն չէր դրած, եւ եղած պահանջքին
ստուար գումարը գանձելու յարմարագոյն ժա-
մանակի մը սպասած պահուն, յանզգաստ գրե-
թէ տարի մ'անցաւ: Յանկարծ երկրորդ տարին
հաշիւ կը պահանջուի. եւ ահա — մէջտեղ
կ'ելլէ հաշուոյ անհաւասար վիճակը: Պէզճեան
Գրիգորին կը փաղէ եւ կշռոյն պակասը լեցնել
կը խոստանայ. միայն թէ պայմանաւ՝ որ ոսկւոյն
վրայ դրոշմներն ի բաց արձակուին. եւ նոյն
պաշտօնն իրեն (Պէզճեանի) յանձնուի: Բնակա-
նապէս այս ճգնաժամուն Գրիգոր յանձն կ'առ-
նու պայմանն. բայց ասով Պէզճեան թշնամի-
ներ կը գրգռէ, որոնք իրենց մերժման քինա-
խնդիր վրէժը յագեցնելու եւ զԳասպար յաչս
Գրիգորի անարգ եւ անկարող ցուցնել կարե-
նալու համար, ոսկէն մաս մը կը խորեն կը
պահեն: Գրիգոր յանհնարս մնալով՝ ակամայ
կը ստիպուի զՊէզճեան այն պաշտօնէն չարժել
բայց ասով ալ բնաւ ոտքը չի քաշեր. վասն զի
Պէզճեան՝ որ սա ժամանակ մը ինք զինքը



ՄԻՔԱՅԷԼ ՉԷԼԷՊԻ ՏԻՒԶ

ծն. 1786 Յնր. 21: — † 1819 Հոկտ. 2

Փոթերանցին մէջէն հարկ էր զԱպտուրահ-մանն՝ որ Տիւզեանց մոլերիմ՝ բարեկամն էր, հեռացնել, եւ տեղը Տիւզեանց ախոյեաններէն մին կանգնել: Այս ալ յաջողեցաւ:

1819 Օգոստոս 27 Տիւզեան ընտանեաց համար աղետալի օր մ'եղաւ. վասն զի այսպէս զարտաքոյ լարուած որոգայթներն որ մ'իրենց ազդեցութիւնն զգալ պիտի տային, եւ այնպէս ալ եղաւ: Այս օրն յանկարծ Գրիգոր եւ Սարգիս փոթերանցը բանտարկուեցան, եւ 1819 Հոկտ. 2ին թագաւորին տանելու պատուակաւ՝ զիրենք բանտէն հանեցին եւ Հոն Գուրու Չէշմէսիի գեմացը գլխատեցին: Նոյն օրը Գուրուչէշմէի ծովեզերեայ տունք եւ Նոր-գիւղի ամարանցն պաշարեցին, եւ ժողովուրդն այս պաշարման պատճառն չիմացած՝ ամարանցին պատուհանէն Միքայէլ (Ծն. 1786 Յունուար 21) եւ Հօրեղբօրորդին Մկրտիչ կախուեցան, իսկ Տիւզեանց մնացեալ բոլոր ազգականներն ի Գամ-գաւառ Հայոց Պատրիարքարանը բանտարկուեցան, ինչք ու ստացուածք յարքունիս գրաւեցան եւ կամ՝ անարգ աճուրդի նետուեցան:

Բայց թշնամիք առով ալ գոհ չեղան: Այս դէպքերու ժամանակ Յակոբ Չէլէպի Սորէա կը գտնուէր: Դաւաճանք զինքն ալ ի Պոլիս բերելու հրաման առին. բայց Գափուտան Ապտուլլահ փաշա՝ որ գիտէր Տիւզեանց անմեղութիւնն, զՅակոբ Չէլէպի, զԿարապետ պէյ եւ զՊօղոս պէյ պահեց. եւ զիրենք պարտելու եւ անոր մահուանէ ազատելու հրամանագիրն ընդունելով

Վեհ. Սուլթանէն, ի Կեսարիա գիւղինք ապահով տեղ մը գետեղեց, ուր իբր երեք տարի մնացին:

Այսպէս ուրեմն կրցան թշնամիք իրենց յաջողութեան վրայ անգամ մը պարծիլ. բայց շատ կարճատեւ էր այս պարծանքը: Գաղզաղ՝ իր խղճէն դրդեալ՝ սկսաւ թշուառ ու տառապեալ Տիւզեան գերդաստանին եւ աքսորեալներուն մեծ մարդասիրութիւն ցուցնել. բայց ինքն ալ Վեհ. Սուլթանի հրամանաւ՝ որ իր սիրելիներուն գլուխն եկող անցից ներքին պատճառներուն շատ ուշ տեղեակ եղաւ, 1820 Սեպտեմբերին, փողերանոցի այնչափ տենչացեալ պաշտօնէն հանուեցաւ եւ Կեմոս աքսորուեցաւ. իսկ տեղն անցաւ Պի-յէզիրճեան Պօղոս: Իսկ միւս թշնամիք չկրցան Վեհ. Սուլթանին արդար վրէժխնդրութենէն խուսափիլ. ամէնքն ալ՝ ի փոխարէն այնչափ անիրաւ սպանմանց, իրենց գլուխը տուին ի քաւութիւն:

Ընթերցողն ինքնին կրնայ գուշակել Տիւզեանց ողբալի վիճակը. երջանկութեան գագաթէն յանկարծ թշուառութեան խորքն իջնել . . . : Այս վիճակին ծանրութիւնն՝ միայն անձամբ փորձելու դժբախտութիւնն ունեցողները կրնան իմանալ: Ծառայից եւ աղախնաց տեղ՝ ցաւ ու տառապանք. սիրեցեալ եղբարց ջերմեակ ընկերակցութեան տեղ՝ ամայութիւն եւ աքսոր: Նախախնամութեան ձեռքը կարգադրած էր ուրեմն, որ Տիւզեանք թշուառութեան դառն բաժակին մինչեւ մրուրը քամեն:

Բայց եղածը մոռնալ՝ տառապելոց ամե-

նամեծ մխիթարութիւնն է. այնպէս որ Վալթէր Սկոտի պէս յառեսանեսրու խօսքերն կը ճշմարտէր, եթէ մարդս անցածն մոռնալու եւ ապագային յուսալու կարողութիւն չունենար: Այսպէս բոլին եւ Տիգրանք: 1822ին Ապրիլ ԱԷձիո արքայորդւոյն ծննդեան օրը՝ Տիգրանց երկու քոյրերն Սուլթանին մարդասիրական գգածմանց դիմելով՝ կրցան հրաման առնուլ, որ իրենց երկու եղբայրքն, որ յոտապութեան կը թափառէին, վերստին ի Կ. Պոլիս դառնան: Նոյնպէս Կարապետ Պէյ եւ Յակոբ Չէլէպի Ապրիլ 22ին յոտապութեան գեղերեր ծանր հարկէն ազատ եղան:

Թէեւ եղբարք անմոռեցան՝ որ Օսմանեան պետութեան Վեհափառ Սուլթանք շատ չեն փութեր իրենց հաւատարիմ ծառայից վրայ անցած փոսահութիւնն: Յամին 1833. դեկտեմբեր 22ին տանձին հրովարտակաւ Յակոբ Չէլէպի Տիգրան՝ փողերանոցի գլուխ կարգեցաւ, որ պաշտօնէութեանս խոստալեց պէտութենէն հանելով զմեզ՝ խաղաղ փայլերու կ՚առաջնորդէ:



ՅԱԿՈԲ ՉԷԼԷՊԻ ՏԻՒԶ

ծն. 1793 Յնր. 3: — † 1847 Յուլ. 4.

# Ի.



ԱԶՄԱԹԻՒ որդւոց մէջէն, որով Աստուած օրհնած էր զՅովհաննէս Չէլէպի, վերջիններէն էր Յակոբ Չէլէպի Տիւզեան (ծն. 1793 Յունուար 3ին)։ Ի բնէ գեղեցիկ եւ չքնաղագիւտ ձիրք զարդարուած, ի մասնաւորի նկարչութեան շատ սէր կը ցուցնէր։ Ալքոնի պալատն յաճախելու ատեն ցուցած յաջողակութիւնը Սուլթանին միտքը գրաւեց, որ չարագէտ արկածներէն ետքը՝ փողերանոցի մեծ պաշտօնին յարմար անձ մը կը փնտռէր, եւ գտաւ զՅակոբ Չէլէպի։ Յակոբ ինք զինքն իւր նախորդաց անունը ժառանգելու արժանի ցուցուց, եւ այնպէս սիրելի էր Ապտիւլ Մէճիտի՝ որ զինքն ու իրմով բոլոր Տիւզեանքն վերստին առաջին պայծառութեան հասցընելու

ամէն կերպ խնամք եւ փոյթ տարաւ։ Այս բա-
ական չէ. քանի՜ քանի անգամ Տիգեանք որ-
քանի պալատն հիւր մնացին։ Այսպէս շուտով
առաջին յարաբերութիւնները նորոգուած էին։

Սակայն ինչ կ՚ընէին թշնամիք։

Յառաջուան պէս իրենց չարանիւթ նեն-
գութիւնները նորոգեցին. բայց այս անգամ
Սուլթան Աբէճիտուցից անձամբ համոզուիլ բան-
տարկուաց քաւթեան ստութեանը։ Եղաւ Գու-
րուչէշմէի ամիրաստնեալ պալատին կարծեցեալ
գեղխութիւնները տեսնելու գնաց. բայց հոն մե-
ծապէս հարուածեցաւ թշնամեաց խմբակը։ Սուտ-
թեանց համար արդար բարկութեամբ գլխուած՝
եւ ստուգել ճանչցաւ Սուլթանն Յակոբայ յարգը։

1839ին Յակոբայ կրտսեր եղբայրը՝ Պօղոս
Չէլէպի առանձին հրովարտակաւ [illegible]
[illegible] անուանեցաւ, բայց Յակոբայ ձեռքին
տակ։

1842ին Ապրիլի գեղեցիկ օր մը Յակոբ
Չէլէպին փոքրանոցէն դարձած ատեն՝ սաստիկ
տկարութիւն մը զգաց, որ այնչափ աւելցաւ՝
մինչեւ մօտալուտ վտանգէ մը կը վախցուէր։
Բորբոքային ջերմամբ սկսած էր տառապիլ. բայց
այս անգամ Վ.Է.Հ. Սուլթանին կողմանէ եկած
բժշկաց ճարտարութիւնն յաջողութեամբ պսա-
կուեցաւ. — Յակոբ Չէլէպի վտանգն անցաւ։

Յակոբ Չէլէպի ամուսնացեալ էր Պօղոս
Պիլէզիքճիի՝ Լուցիկա դստեր հետ, եւ ութը
զաւակ ունեցաւ, որոնցմէ երկուքը՝ Յովհաննէս
եւ Գրիգոր՝ տակաւին ութը տարուան հասակին

Պօղոս և Կարապետ Չէլէպիներուն խնամակալութեան տակ արքունի սեղանաւոր անուանեցան և Էճէ-Ֆն տուին (1847ին)։

Երբ դիւցազնը փողերանոցի պաշտաման հետ երկրորդական պաշտօններ ալ կը վարէր։ Հազիւ թէ իր վերջիչեալ հիւանդութենէն ապաքինեցաւ, հասարակաց օգտին և երկրագործութեան խորհրդարանին անդամ՝ անուանեցաւ, և իր խորատես սրամտութեամբը շատ անգամ՝ խորհրդակցաց զարմանքը կը շարժէր։

Յամին 1843 Հոկտ. 6ին Յակոբ Չէլէպի սկսաւ փողերանոցի զարգացման համար ամէն ջանք ընել։ Տէրութիւնն փողերանոցին մէջ շոգեշարժ մեքենաներ մտցնել ուզեց, որպէս զի թէ դրամահատութիւնը դիւրանայ և թէ անձանց խնայութիւն ըլլայ։ Որուն յանձնելու էր այս գործը. Յակոբ հոն էր. հարկաւ Յակոբայ, որ նախ և յառաջ Լոնտոն քանի մի հոգի ղրկեց, որպէս զի մեքենականութեան այս մասն ուսումնասիրեն։ Այս միջոցին, այսինքն 1844 Յունուար 10ին, ամկի ՔԷՄԷՏՀՆԷՆեկրին եղան։

Տիգեան Յակոբայ անուան կոթող կը մնայ նաև իր ի Զմիւռնիա կանգնած թղթի մեծ գործարանն[1]։

Այսպիսի գործունէութեան մէջ էր Յակոբ Չէլէպի, երբ Սուլթան Ապտիւլ Մէճիտ տէրութեան և քաղաքական կողմերը ճանապարհոր-

[1] Յամին 1847 ի Աթէնա լոյս տեսնող Եւրոպա օրագրին լրագիրն իր յօդուածոյն ու ձեռնտուութեամբը հրատարակուած է։ Տես. Հանդէս Ամսօրեայ. 1888, թ. 12։

դնելու պատրաստուած ատեն՝ (1846ին) զինքն ու եղբայրը զՊօղոս Չէլէպի հետն առնուլ կ'ուզէր. բայց Յակոբ յանկարծ ծանրապէս հիւանդանալով՝ միայն Պօղոս Չէլէպի կրցաւ ուղեկցիլ Վեհափառ ուղեւորին: Բայց կը տեսնուէր՝ որ այս անգամ Յակոբայ առողջութիւնը շատ տկարացած էր: Սուլթանին հրամանաւն ու խորհրդովը 1847 Մայիս 13ին դէպ ի Զմիւռնիա ճամբայ կ'ելլէ, անկէ կ'անցնի Թրիեստ, Վենետիկ. Բատուա եւ շոգեկառք Վիեննայի վրայէն Բարիզ անցնելու վրայ եղած ատեն՝ Յուլիս 4ին գիշերին այնպէս կը ծանրանայ վիճակը, որ ամենաճարտար բժշկաց օգնութիւնն ալ անօգուտ կ'ըլլայ, եւ ի Վիեննա հոգին կ'աւանդէ: Մարմինն ի Կ. Պոլիս փոխադրուեցաւ եւ Գուրուչէշմէի գամբանարանը զետեղուեցաւ:

Հարկ չենք տեսներ ընտանեաց եւ բարեկամաց եւ բոլոր ազգին եւ նոյն իսկ Վեհափառ Սուլթանին՝ այսպիսի կորստեան վրայ զգացած ցաւին թարգման հանդիսանալ. միայն այսչափն կ'ըսենք, թէ Յակոբ Չէլէպին իր մահուամբը շատերուն զգալի ըրաւ իր բաժանումը. գերեզմանին վրայ լացին որբն ու այրին, թշուառն ու աղքատը: Իր գագաղին շուրջը խմբուած բազմախուռն ժողովրդեան ահա՛ ինչ կ'ըսէր իր գամբանականն արտասանող բեմբասացը. “Կորսնցուց Օսմա-
„նեան տէրութիւնն իրեն խիստ պիտանի ու օգ-
„տակար Մարդ մը: Կորսնցուց հայրենիքը մեծ
„ու խիստ խելացի ու ազնուական Անձ մը: Կոր-
„սնցուց ազգը իր փառքն ու պարծանքը, իր

« երախտաւորն ու բարերարը: Վերջապէս կոր-
« սնցուց իւր ընտանիքը՝ անգիւտ անգին մար-
« գարիտ մը....:» [1]

Համառօտ ազգաբանութեան Ը. եւ Թ. գլուխները կը նուիրենք Կարապետ եւ Պօղոս Տիւզեան Չէլէպիներու համառօտ կենսագրութեան:

---

[1] Ճառ յուղարկաւորութեան մեծանուն եւ Հոյակապ Յակոբայ Չէլէպւոյ Տիւզեանց, ի Հ. Թադ. Վ. Մուրատեան. Վիեննա, Մխիթ. տպ. 1847. էջ 11։



ԿԱՐԱՊԵՏ ՊԷՅ ՏԻՒԶ

*ծն. 1779 Յնր. 28: — ÷ 1855 Նոյ. 27:*

# Ը.



ԵՐԵՊԵՏ (ծն. 1779 Յուլիս 28) այնպէս սիրելի եղած էր թագաւորին, որ Վ.եհ. Սուլթանն հաճեցաւ անգամ մը Կարապետ Չէլէպիոյ այգւոյն մէջ ընթրել. և իբր նշան իր գոհութեան որ մի իր Վ.եհ. մայրն ալ մասնակից բոլոր Կարապետի արժանաւոր հիւրասիրութեան։ Օսմանեան պետութեան բարձր շքանշաններէն շատերն ունէր. մանաւանդ յիշատակութեան արժանի է 1849ին ընդունած Իֆթիխար Նիշանի աստիճանն, որով ամէն զինուոր պարտական էր իրեն ողջոյն տալ, որ դեռ ռայայի մը եղած չէր։ Թող օտար տէրութեանց կողմանէ ընդունածներն, որոնք ամէնքն ի միասին թուով 12 հատ էին։ 1850 Յուն. 22ին Վ.եհ. Սուլթանն՝ ի նշան իր համարման զԿարապետ պէյութեան աստիճանն հասցուց և Վ.եհ. Արքայամօր սեղանաւոր կարգեց։ Իր հասուն ծերութեանը ժամանակ՝ Կարապետ հրա-

ման ունէր Վեհապետին հետ մտերմութեամբ վարուելու։ Քանի անգամ Թագաւորն այս ծերունին ընդունելու համար դիմացը կու գար։

Յամին 1855 Նոյեմբեր 27ին Կարապետ կքեցաւ 79ամեայ ծերութեան բեռան տակ, եւ Հայրը գերեզմանն ամփոփեցաւ։





ՄԻՀՐԱՆ ՓԷՅ

Ծն. 1817 Նոյ. 1։

Փ.



ԱՌՆԵԱՆՔ մեր պատմու-թեան վերջին դիւցազին, որ տակաւին կենդանեաց մէջ է. եւ գոյցես Տիւզեան երեքդարեան պատմութեան անուանակիրն ու կենդանի վկայն է: Այս անձն է Միքայէլ Չելեպի Տիւզ (ծն. 1817 նոյեմբեր 1):

Հայոց թէ Յակոբ Չելեպի կենդանեաց շրջանէն չեռացաւ, եւ աշխ փոքրանցի ակ-նապէշ ստոյգներն սկան խորոկ՝ գանէ այս ան-գամ ձեռք անցընելու այս ի չնոց ոանչացեալ պաշտօն. բայց իրենց բոլոր կեան դարձեալ ի

գերեւ եղաւ, երբ 1847 Օգոստոսին՝ փոշերա-նոցի գործակալութիւնն յանձնուեցաւ Տիւզեան Սերգսի միամօր որդւոյն՝ Միհրան Չէլէպւոյն:

Իր երիտասարդական աշխուժին առաջին գործն եղաւ՝ Յակոբ Չէլէպւոյն շոգեշարժ մե-քենաներու պատրաստած խորհուրդն իրագոր-ծել եւ կատարելագործել: Ասով այնուհետեւ փոշերանոցն եւրոպական ոճով դրամ՝ կարել, որով ընդհանուրին ծախուց ալ մեծ խնայութիւն կ'ըլլար:

Այս ժամանակներս Թոռոմէ Հոմելի խոր-հրդով 12 հոգի միաբանած՝ մեծ գրամատուն մը պիտի հաստատէին. որոնց գլուխը պիտի ան-ցնէր Միհրան Չէլէպի: Գործն ըստ բաւականի յառաջադէմ վիճակի մէջ էր, եւ մինչեւ նաեւ շատերուն վերջացած խնդիր մը կ'երեւէր. սա-կայն ռուսական անակնկալ պատերազմին լուրը խափանեց այս ձեռնարկութիւնը:

1855ին Միհրան Չէլէպին իր այնչափ ծառայութեանց փոխարէն պէյլէրպէյի բարձր տի-տղոսին արժանացաւ՝ արքունի հրամանաւ: Հոս նոր ասպարէզ մը կը բացուի Միհրան պէյին առջեւ. ետեւէ ետեւ պաշտօնէ պաշտօն կը բար-ձրանար, որ անշուշտ իր կարողութեան աստի-ճանին վկայութիւնն մին էր. 1856 Մարտ 3ին Թանզիմաթ Մէճլիսին անդամ կարգեցաւ. 1857 Ապրիլ 3ին Մէճլիսի Մաարիֆի (համարակաց կրթու-թեան) խորհրդական անուանեցաւ: Բայց ամենա-մեծ գործը կրնանք համարել՝ Ֆէսխանէի հաստա-տութիւնն, որ 1859 Օգոստոս 1ին իրեն յանձ-

նուեցաւ. եւ իր ժամանակը բաւական յաջող ընթացք ունէր. թէեւ ժամանակը դժբախտ դարձուած մը տուաւ անոր։

Միհրան Պէյ այսպիսի եռանդուն գործունէութեամբ շատ աւելի սիրելի եղաւ Օսմանեան Պետութեան Վեհապետին առջեւ, որ սկսաւ իր բարձր համարման նշանները գեղուլ անոր վրայ։ Սուլթան Ապտիւլ Մէճիտի օրով Միհրան Պէյի տուած պատուոյ շքանշաններն թուով 12—14 հատ են, թող պատուոյ տիտղոսներն ալ։ Ապտիւլ Ազիզ 1862 Նոյ. 1ին Վեհ. Արքայական մեծ սեղանաւորին ըրաւ զՄիհրան Պէյ. թէպէտ 1864 Փետրուար 5ին այս պաշտօնն իրմէ առնուեցաւ, բայց միայն անոր համար, որպէս զի 1870 Մարտ ամսոյն մէջ տրուել պատուով վերստին տրուի, եւ այս անգամ տրուեցաւ իրեն Բ—Ֆ—Է Դ—Ը։ 1864 Յունուար 18ին արդարութեան ատենին անդամակից եղաւ։ Այս պատիւն պարզ պաշտօն մը չէր, այլ մեծ նշանակութիւն ունէր, վասն զի այս ժողովքն մինչեւ այն ատեն միայն տաճիկ մեծամեծներու վերապահեալ էր, եւ Միհրան Պէյ առաջին քրիստոնեայ անդամն եղաւ։ 1867ին Սուլթան Ապտիւլ Ազիզին հետ Բարիզ գնաց, եւ Համազգային դրամական Համախմբութեան՝ Օսմանեան Պետութեան կողմանէ նուիրակ կարգեցաւ։ Իսկ 1877ին ծերակուտի անդամ՝ անուանեցաւ։

Մինչեւ 1880 այս պաշտօններն այսպէս շարունակուեցան, որ տարւոյ մէջ՝ փողերանոցի վարչութիւնը Մ—ւէի յանձնուեցաւ։

Միհրան Պէյ այժմ իր ընտանեաց ծոցին մէջ հանդարտիկ կը վայելէ իր այնչափ տարի անդուլ գործունէութեամբ շահած համբաւն: Երկինք իրեն դեռ երկա՜յն օրեր հաճին պարգեւել:

Այս է մեր իղձքն ու մաղթանքն:



# ԺԱ.



ԱԶԳԱԲԱՆՈՒԹԵԱՆՍ ամբողջութեան քանի մը համառօտ տեղեկութիւններ մնացին: Աբրահամ պէյ ամուսնացեալ էր՝ փողերանոցի գանձապահ՝ Եաղուբճեան Պետրոս էֆէնտիի 14-ամեայ դստեր՝ Մարիամ Եւփրոսինէի հետ (1849 Յունուար 30:) վեց զաւակ ունեցաւ, որոնցմէ չորս մանչ զաւակները կ. Պոլսոյ հայ-կաթողիկէ հասարակութեան անուանի ներկայացուցիչներէն են:

Առաջինն է վսեմ. *Սերգիս Պէյ* Տիգ (ծն. 1851, փետրուար 15) որ 1875ին փողերանոցի գանձապետ անուանեցաւ: Երբ Աբրահամ պէյ 1876ին եւրոպական երկիրները ուղեւորելու եղաւ՝ Բ. Դրան հրամանաւ Սերգիս պէյ փողերանոցի գործակալութեան փոխանորդ

կամ՝ ուելի՛ առժամանակեայ վարիչ անուանե-ցաւ, եւ տարի մ՚ետքը՝ 1878ին Վ. Ե. Հ. Սուլթան Ապտիւլ Համիտ խանէն Մէճիտիէ Նշանի Բ. աստի-ճանն ընկալաւ, որ ցոյց է Օսմանեան պետութեան առջեւ ունեցած բարձր համարման։ 1880ին Միհրան պէյ փողերանոցէն ելած ատեն՝ Սերգիս պէյն ալ հօրն ընկերացաւ։

Երկրորդն է Յակոբ պէյ, (ծն. 1854 յուն. 21։) 1888 յուլիս 24ին Երանժիէրի Յովհաննէս Էֆէնտիի դստեր՝ Նէկտար օրիորդին հետ ամուսնացաւ։ Երրորդն Լեւոն պէյ (ծն. 1856 փետր. 22) որ 1881 յուլիս 22ին Աբրօ-եան Պօղոս պէյի Մարիամ՝ դստեր հետ ամուսնա-ցաւ։ Իսկ չորրորդն Հրանտ պէյ (ծն. 1862 յունուար 25)։ Երեք եղբարք տարրական ու-սումն ի տան ընդունելէն ետեւ, Բարիզի այլեւայլ դպրոցներն աւարտեցան, ու լաւ դաստիարա-կութիւն առած՝ դարձան ի Կ. Պոլիս։



